**Ողջույն Ձեզ Նորից Հարգելի Սերգեյ,**
*(21 Դեկտեմբերի 2014թ., Լոս Անջելոս)*

Հարգելի Սերգեյ, այս անգամ ես գրում եմ Ձեզ Հայերեն, որովհետև, ինչպես նշեցիք, Դուք Հայաստանի Ակադեմիայի լիիրավ անդամ եք և Հայ գիտնական, հետևաբար Դուք գիտեք Հայերեն: Բացի այդ ինձ համար շատ ավելի հեշտ է գրել Հայերեն և մանավանդ՝ գրել գրագետ:

Հարգելի Սերգեյ մի քանի ֆիզիկոսների նամակները և հատկապես Ձեր գրած նամակները, որտեղ բարձրացվում էր ժամանակի ուղղության հակաշրջման դեպքում Հայկական Հարաբերականության Տեսությունից ստացված ձևափոխությունների և բանաձևերի մաթեմատիկական տեսքի պահպանման հարցը, մեզ ստիպեցին գրել մի առանձին հոդված նվիրված միայն հենց այդ հարցին: Չնայած մեր հիմնական հոդվածում (96էջ), որը տպագրվեց Հայաստանում 2013թ. Հունիսին, մենք անդրադարձել էինք Հայկական Տեսության մեջ տարբեր համաչափության հարցերին, բայց Ձեր նամակից հետո իսկապես անհրաժեշտություն առաջացավ գրել այս հոդված, որը կլուսաբաներ միայն ժամանակի և տարածության ուղղությունների հակաշրջման հարցերը ամենայն մանրամասնությամբ: Այս աշխատանքը տևեց մոտ մեկ ամիս և այսօր մենք այն ավարտեցինք, ինչպես նաև գրանցեցինք ԱՄՆ-ի Հեղինակային Իրավունքների Գրասենյակում և, բացի դրանից, մենք այն տեղադրեցինք նաև տարբեր համացանցերում: Մեր այս նոր հոդվածում մենք սպառիչ կերպով վերլուծում ենք ժամանակի ուղղության հակաշրջման և տարածության ուղղության հակաշրջման խնդիրները Հայկական Հարաբերականության Տեսության մեջ: Մեր հոդվածը, Հայերեն, կցված է այս նամակին (17 էջ): Եթե Ձեզ համար հեշտ կլինի կարդալ այն Անգլերեն, ապա տեղյակ պահեք և ես կուղարկեմ Ձեզ մեր հոդվածի Անգլերեն թարգմանությունը:

Մի քանի տողով միայն ասեմ, որ Ձեր այն պնդումը թե *«…ռադիկալի (արմատի նշանի) մեջ առաջին աստիճանի (v/c) անդամի ներկայությունը խանգարում է, այսինքն նշանը փոխվում է՝ դառնում է -(v/c) և արմատի տակի արտահայտությունը նույնը չի մնում, հետևաբար Հայկական Տեսությունից ստացված բանաձևերը և ամբողջ տեսությունը սխալ է…»*, չի համապատասխանում իրականությանը, որովհետև Դուք անտեսում եք այն փաստը, որ այդ (v/c) անդամը միայնակ չէ, այլ այն ունի s գործակից, որը ժամանակի ուղղության հակաշրջման հետ մեկտեղ ինք նույնպես փոխում է իր նշանը՝ (-s) (ինչպես մասնիկի սպինը), այնպես որ ժամանակի ուղղության հակաշրջման դեպքում s(v/c) անդամի նշանը մնում է անփոփոխ: Հետևաբար այս հարցում ավանդական ֆիզիկայի հետ ոչ մի հակասություն չկա:

Հարգելի Սերգեյ, խնդրում եմ կարդալ մեր հոդվածը մինչև վերջ և իհարկե, ցանկության դեպքում, Դուք կարող եք կապնվել ինձ հետ: Ինչպես գիտեք ես ակադեմիկոս չեմ և հետևաբար նաև շատ զբաղված չեմ:

Կեցցե՛ Հայկական Գիտության Վերածնունդը

**Ռոբերտ Նազարյան**
robert@armeniantheory.com

===================================
-----Original Message-----
From: smatinian@xx.xx.com [mailto:smatinian@xx.xx.com]
Sent: Friday, November 14, 2014 8:15 PM
To: Nazaryan Robert
Subject: 100 years of inquisition in physics is now over and Aether Energy Age has begun!

Dear Robert,

Lorentz low of mechanical motion are t-reversal invariant, since it radical in the denominators has no ,in contrast of yours, first power of v/c.
This is reason of your mistake. I ask you don't reply since I am very busy.
Best wishes in your works. Sergei Matinyan, full member of National Academy of sciences of Armenia